ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 10 1971

ՍԵՆ ԱՐԵՎՇԱՏՅԱՆ

# ՊԼԱՏՈՆԻ ԵՐԿԵՐԻ ՀԱՅԵՐԵՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԸ

Հին Հայաստանի մտավոր կյանքի, հատկապես փիլիսոփայության և աստվածաբանության կազմավորման գործում թարգմանական երկերը խաղացել են չափազանց բազմիմաստ ու դրական դեր։ Հայ գրության վաղ շրջանում (V—VI դդ.) նրանք կոչված էին հնարավորին չափ սեղմ ժամկետում մեղմելու ազգային գիր ու գրականություն ձեռք բերած, բայց շատ ծանր քաղաքական կացության մեջ գտնվող երկրի հոգևոր քաղցը և ինքնուրույն երկերի հետ միասին բավարարելու նրա գաղափարական պահանջմունքները։ Վաղ-ֆեոդալական Հայաստանի փիլիսոփայական և աստվածաբանական մի շարք հոսանքներ իրենց կազմավորման ընթացքում ուղղակի սնվել են այդ թարգմանական աղբյուրներից (Աստվածաշունչ, Բարսեղ Կեսարացի, Գրիգոր Նազիանզացի, Արիստոտել, Պորփյուր, Տիմոթեոս Կուզ և այլն)։ Այդպիսիք են հայ փիլիսոփայության ամենավաղ ուղղություններից՝ ջատագովությունը և նոր-պլատոնականությունը, կրոնա-դավանաբանական հոսանքներից՝ միաբնակության գաղափարախոսությունը և այլն։

Այդ իսկ տեսակետից թարգմանական հուշարձանների ժամանակի ճշգրտման հարցը կարևոր նշանակություն ունի հայ հին գրականության և գիտության զարգացման պատմության համար։ Բայց և միաժամանակ այդ կարևոր հարցը պատկանում է հայ մատենագրության նաև ամենադժվարին և կնճռոտ խնդիրների թվին։ Ճշգրիտ տվյալների, ուղղակի ցուցումների բացակայությունը հարկադրում է հետազոտողին դիմելու այդ հուշարձանների բանասիրական քննությանը, նրանց լեզվա-ոճական, տերմինաբանական ընդհանրությունների և տարբերությունների հետազոտմանը, ինչպես և որոնելու նրանց հետքերը և գաղափարական ազդեցությունը ժամանակագրական առումով ավելի հայտնի ու վստահելի հայկական աղբյուրներում և թարգմանական երկերում։ Այդ ճանապարհով է ընթացել վաստակաշատ գիտնականներ Գ. Տեր-Մկրտչյանի, Ն. Ադոնցի և Հ. Մանանդյանի աշխատանքը, որոնք երկար տարիներից հետո կարողացան որոշ պարզություն մտցնել թարգմանական գործում հսկայական երախտիք ունեցող հունաբան դպրոցի առաջացման և հետագա գործունեության ժամանակագրության խնդրում։

Այժմ մեր նպատակից դուրս է անդրադառնալ այն վեճերին, որ ծագեցին նրանց միջև, իսկ առավելևս նրանց հարած կողմնակիցների միջավայրում։ Դա արդեն հիմնականում մի մասնավոր հարցի շուրջ պտտվող՝ հունաբան դպրոցի 460-ական (Գ. Տեր-Մկրտչյան, Մ. Աբեղյան), թե VI դարի 10-ական (Հ. Մանանդյան) թվականներին սկզբնավորվելու խնդիրն է, որն անշուշտ

կարևոր նշանակություն ունի հայոց գրականության ու գիտական մտքի ժամանակագրությունը ճշտորոշելու համար, բայց երկրորդական է հունաբան դպրոցի երկերի խմբավորման, տարբեր գաղափարական հոսանքների վրա նրանց ազդեցության, փիլիսոփայական ուղղությունների հաջորդականության խնդիրը լուսաբանելու տեսակետից։

Թեմայից չշեղվելու համար նշենք միայն, որ եթե Հ. Մանանդյանի հունաբան թարգմանությունների խմբավորումը (ըստ լեզվա-ոճական և տերմինաբանական հատկանիշների) ոչ մի էական առարկություն չի վերցնում, ապա հունաբան դպրոցի նրա առաջարկած ժամանակագրական շրջանակները խիստ վիճելի են, վերանայման ու ճշգրտման կարոտ։ Այդ մենք անում ենք հենվելով հոդվածի շարադրության, որպես հիմք ընդունելով Գ. Տեր-Մկրտչյանի առաջարկած ճիշտ ժամանակագրական եզրը։ Սակայն չշեղվենք։

Մեր նպատակն է պարզել մի խումբ հին թարգմանությունների անկը և կատարման ժամանակը, ինչպես և նրանց կապը հայերեն այլ հնագույն թարգմանությունների և բնագրային երկերի հետ, մի հարց, որն իր բավարար լուծումը չի ստացել, չնայած մի շարք բանասերների ջանքերին։ Խոսքը վերաբերում է Պլատոնի երկերի թարգմանությանը։

Ինչպես հայտնի է, անցյալ դարի 30-ական թվականներին, երբ մամուլի տակ էր «Նոր հայկազյան բառգիրքի» առաջին հատորը, Հնդկաստանից Վենետիկ բերված ձեռագրերի մեջ գտնվեց Պլատոնի հինգ երկխոսությունների հին հայերեն թարգմանությունը։

Գիտական աշխարհի համար, Եվսեբիոս Կեսարացու և Փիլոն Եբրայեցու երկերի հայերեն հին թարգմանությունների հայտնագործումից հետո, դա երրորդ շշմեցուցիչ նորությունն էր։ Այդ եզակի ձեռագիրը, որն այժմ էլ Վենետիկի Մխիթարյան միաբանության սեփականությունն է, պարունակում է Պլատոնի հետևյալ երկերը.

ա) Առ Տիմէոս՝ ասկս բնութեան (Τὰ τοῦ Τιμαίου ἢ περὶ φύσεως).
բ) Սոկրատայ պատասխանի (Ἀπολογία Σωκράτους).
գ) Եւթիփռոն կամ յաղագս սրբոյ (Τὰ τοῦ Εὐθύφρο ἢ περὶ ὁσίου).
դ) Օրէնք կամ Օրէնսդրութիւն (Νόμοι). 12 գիրք.
ե) Մինովս կամ յաղագս օրինի (Μίνως ἢ περὶ νόμου);

Արտացոլելով հրճվանքը ապագրության այդ նորահայտ թարգմանությունների բառապաշարը իրենց բառարանի երկու հատորներում էլ, հին հայերենի հմուտ գիտակներ Մ. Ավգերյանը, Խ. Սյուրմելյանը և Գ. Ավետիքյանը Պլատոնի երկերի թարգմանության մասին առաջարկում գրեցին հետևյալը. «Թարգմանութիւն հին՝ պաշտամամբ հելլենաբանութեան ...Յայտնէ Գրիգոր Մագիստրոս՝ թէ և ինքն աշխատասիրեալ իցէ ի թարգմանութիւն Տիմէի են, բայց թարգմանութիւն օրինակիս մերոյ եղեւ և ևս հնագոյն»[1]։ Այսինքն, երբեք վարկածային գնահատմամբ, Պլատոնի երկերի ասկս թարգմանությունն «ավելի հին էր», քան Գր. Մագիստրոսի ժամանակաշրջանը։

Այս առաջին ճշտորոշումը կարևոր էր այն առումով, որ ընդունում էր Պլատոնի երկերի թարգմանությունը XI դարից առաջ և պետք է կազմավորեր հետագա ուսումնասիրողների թարգմանության ժամանակաշրջանի ավելի

[1] Նոր բառգիրք հայկազեան լեզուի, հատ. Ա, Վենետիկ, 1836, էջ 18։

ճշգրտելու հարցում։ Սակայն տպելով Պլատոնի հայերեն բնագրերի հրատարակիչ, նույն Մխիթարյան միաբանության անդամ Հայր Արսեն Սուքրյանը չեզվեց այդ ճանապարհից, լույս ընծայելով երեք տրամախոսությունները (Եվթիփրոնը, Սոկրատի պաշտպանը և Տիմեոսը)[2] որպես Գր. Մագիստրոսի թարգմանություններ, նշելով իր առաջաբանում, որ «չկարծեմ այլ, Մագիստրոս ասեմ, ձեռն արկ թարգմանել զՊլատոնի գործն՝ բայց ընդել մատենագրաց և հելլենական իմաստութեանն»[3]։ Մյուս երկու տրամախոսությունները (Օրենքները և Մինոսը)[4] հրատարակվեցին քիչ հետո Գ. Զարբհանալյանի ջանքերով։

Գ. Զարբհանալյանը չհամաձայնեց Ա. Սուքրյանի կարծիքին։ Նշելով որոշ բառաձևերի նմանությունը, թե Պլատոնի երկերը թարգմանված պետք է լինեն Մագիստրոսից առաջ և որ նրանք Դավիթ Անհաղթին են վերագրում այն, Գ. Զարբհանալյանն ասում է. «Մեր ձեռքն հասածներուն մէջ ոճոյ և թարգմանութեան միակերպութիւն չտեսնելով, հաւանական կերեւնայ, որ մի և նոյն գրչին արդիւնք չըլլան. բայց ճիշդ ժամանակն որոշել, եւ ասոնց թարգմանիչը, դժուարին կերեւնայ»[5]։

Պլատոնի հայերեն թարգմանության հարցով զբաղվել է նաև անվանի հայագետ Ֆրեդերիկ Կոնիբերը։ Նա հակված է գտնել Գր. Մագիստրոսի թեկնածությունը, սակայն նրա համար մի փոքր երկ է թվում, ասելով, որ հայոց թարգմանությունը, ըստ երևույթին, կատարված է VII դարից ոչ վաղ և XI դարից ոչ ուշ, բայց, անկասկած, ավելի վերաբերում է այդ վերջին ժամանակաշրջանին»[6]։

Կա և մի այլ կարծիք, որն արտահայտել է վաստակաշատ բանասեր Հ. Տաշյանը։ Իր գրախոսականներից մեկում նա խոսում է այն մասին, որ Գր. Մագիստրոսի նամակը չանի մասն անցեր։ Այն պետք է հասկանալ այսպես. Մագիստրոսը թարգմանել է «Տիմեոսն» ու «Փեդոնը», իսկ մնացած բոլոր տրամախոսությունների թարգմանությունը կատարվել է Մագիստրոսից առաջ[7]։ Սակայն Հ. Տաշյանը չի հիմնավորում իր դիրքորոշումը, և այդ պատճառով էլ պարզ չէ, թե մինչև Մագիստրոսը եղած որ շրջանին է վերագրում նա մնացած երկերի թարգմանությունը։ Բացի այդ, անհասկանալի է մնում, թե ինչպես կարող էր առաջանալ ոճական և տերմինաբանական այն ակնհայտ ընդհանրությունը, որ կա Մագիստրոսին վերագրվող «Տիմեոսի» թարգմանության և նրան անհայտ մնացած մյուս չորս տրամախոսությունների միջև։

Բայց ի՞նչ է ասել Գր. Մագիստրոսը Պլատոնի երկերի թարգմանության մասին, որ այդքան գայթակղել է որոշ բանասերների։ Սարգիս վարդապետին ուղղված հայտնի նամակում, խոսելով իր գրական զբաղմունքների մասին, նա

---

2 Պլատոնի իմաստասիրի տրամախօսութիւնք. Եվթիփրոն, Պաշտպանութիւն Սոկրատայ և Տիմէոս, հրատ.՝ Հ. Արս. Սուքրեան, Վենետիկ, 1877։

3 Անդ, էջ 10։

4 Պլատոնի տրամախօսութիւնք. Յաղագս օրինաց և Մինովս, Վենետիկ, 1890։

5 Գ. Զարբհանալյան, Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց, Վենետիկ, 1889, էջ 660։

6 F. C. Conybeare, On the Ancient Armenian Versions of Plato, „American Journal of Philology", vol. XII, № 2, էջ 193—210. Տե՛ս նաև Հ. Տաշյանի գրախոսականը՝ «Հանդես ամսօրյա», 1892, էջ 33—37։

7 Տե՛ս Հ. Յ. Տ., Փիլոնի և Պլատոնի գործոց հայերեն թարգմանությունը, «Հանդես ամսօրյա» 1890, էջ 160։

ի միջի այլոց ասում է. «ոչ եմք երբէք դադարեալ ի թարգմանութենէ եւ. բազում մատեանս, զորս ոչ եմք գտեալ ի մեր լեզուս՝ զերկուս մատեանս Պղատոնի. զՏիմէոսի տրամաբանութիւնսն և զՓեդոնին, յորս բազում ճառսն նախագիտականին այն պարփակեալ կայ, և զայլս բազումս յիմաստասիրացն: ...բայց և զԵրկրաչափականն զԵւկլիդեսին սկսայ թարգմանել. և եթէ ատակաւին կամեսցի տէր երկարանալ մեզ ի կենցաղումս, բազում ճառս յանձին կալեալ զմնացեալսն բոլոր Յունաց և Ասորւոց թարգմանել ոչ դանդաղեցայց»[8]:

Գր. Մագիստրոսի հայտնած այս տեղեկության համաձայն հնարավոր է եզրակացնել միայն, որ նա սկսել էր թարգմանել «Տիմեոսը» և «Փեդոնը», սակայն պարզ չէ, հաջողվե՞ց արդյոք նրան, այդ բազմազբաղ պետական և ռազմական գործչին, իրականացնել իր մտադրությունը, թե ոչ: Բացի այդ, եթե նույնիսկ ընդունենք, որ նրան այդ հաջողվել է, ապա հարց է ծագում. պահպանվե՞լ է արդյոք այդ թարգմանությունը, և մեզ հասած «Տիմեոսի» հայերեն բնագիրը նրա՞նն է, թե ավելի հին, հունաբան թարգմանիչների գրչին է պատկանում: Ինչ վերաբերում է «Փեդոնի» թարգմանությանը, որի մասին նույնպես խոսում է Մագիստրոսը, ապա այն առհասարակ չի հասել մեզ և նրա գոյության մասին ոչ մի տվյալ չկա: Բացի այդ, ո՞րը և ո՞ւմ կողմից է կատարված «Եվթիփրոնի», «Սոկրատի պաշտպանության», «Մինոսի» և «Օրենքների» թարգմանությունը, որոնց մասին Մագիստրոսը ոչինչ չի հայտնում:

Ինչպես տեսնում ենք, Մագիստրոսի նամակի և Պլատոնի երկերի թարգմանության առթիվ ծագում են մի շարք հարցեր: Որոշ հետազոտողներ շրջանցում են դրանք և Մագիստրոսի նամակի հիման վրա նրան են վերագրում բոլոր պլատոնյան տրամախոսությունների թարգմանությունը: Ըստ երևույթին, նույն այդ պատճառաբանությամբ, Հ. Մանանդյանը իր «Հունաբան դպրոցը» հմտալից աշխատությունը գրելիս բաժանում էր նույն կարծիքը և լիովին անտեսել էր Պլատոնի երկերի թարգմանությունները: Ամբողջովին շրջանցված է Պլատոնը նաև Ն. Ակինյանի ուսումնասիրություններում:

Սակայն այդ բարդ հարցը չի կարող լուծվել Գր. Մագիստրոսի նամակի հիման վրա այն պարզ պատճառով, որ նույնիսկ եթե Մագիստրոսին հաջողվել է ավարտել «Փեդոնի» և «Տիմեոսի» թարգմանությունը, Պլատոնի երկերի մեզ հասած հայերեն բնագրերը, այդ թվում նաև «Տիմեոսը», չեն կարող վերագրվել Մագիստրոսին ինչպես նրանց արխայիկ հունաբան բառապաշարի, այնպես և այդ թարգմանությունների ակնհայտ հետքերի պատճառով, որոնք կան VI—VII դարերի հայ փիլիսոփայական գրականության մեջ:

Հունաբան դպրոցի գործիչները, ինչպես հայտնի է, իրենց կրթությունը ստանում էին նոր-պլատոնականության խոշորագույն կենտրոններում՝ Ալեքսանդրիայում, Աթենքում, Կոստանդնուպոլսում: Նրանց ջանքերով նոր-պլատոնականությունը V—VI դարերում լայնորեն տարածվեց Հայաստանում և հետ մղեց քրիստոնեական ջատագովությունը որպես առանձին փիլիսոփայական ուղղություն: Հարց է ծագում. կարո՞ղ էին արդյոք հայ նոր-պլատոնական թարգմանիչները բավարարվել միայն Արիստոտելով և նրան մեկնող Պորփյուրով: Պատմականորեն և տրամաբանորեն մոտենալով այս հարցին, կարելի է եզրակացնել, որ Հունաբան դպրոցի ուշադրությունից ոչ միայն չէր կարող վրի-

8 Գրիգոր Մագիստրոսի թղթերը, ի լոյս ընծայեց Կ. Կոստանեանց, Ալեքսանդրապոլ, 1910, էջ 66:

թյան հարցը համարվում էր լուծված հօգուտ Գր. Մագիստրոսի, Լ. Խաչիկյանը 1945 թ. իր «Եղիշեի «Արարածոց մեկնութեան» աշխատությունը» խորագիրը կրող թեկնածուական դիսերտացիայում նորից բարձրացրեց այն։ Նախորդ բանասերների հետ համեմատած նա ամենից շատ մոտեցավ ճշմարտությանը, աշխատեց ապացուցել, որ Պլատոնի երկերը թարգմանված պետք է լինեն Հունաբան դպրոցի գործիչների կողմից։ Պաշտպանելով «Նոր հայկազյան բառարանի» հեղինակների նախնական կարծիքը, Լ. Խաչիկյանը եզրակացնում է, որ «այդ թարգմանությունների լեզուն, ոչ մի ազգակցության գույն չունելով Մագիստրոսի լեզվին, թե՛ բառապաշարով և թե՛ շարահյուսությամբ առնչվում է Հունաբան դպրոցի հնագույն արտադրանքներին»[10]։

Ըստ Լ. Խաչիկյանի, Եղիշեն օգտվել է «Տիմեոսի» հայերեն թարգմանությունից։ Ի ապացույց այդ եզրակացության նա բերում է մի նախադասություն Եղիշեի «Արարածոց մեկնութիւնից» և Պլատոնի «Տիմեոսից»։ Սակայն համեմատվող երկու հատվածները, ըստ բովանդակության ունենալով մոտավոր նմանություն, շարահյուսությամբ ակնհայտորեն տարբեր են.

| Տիմէոս | Արարածոց մեկնութիւն |
| --- | --- |
| «Եւ առանց հրոյ ոչ երբէք լինելի ինչ երեւելի, եւ ոչ շօշափելի՝ առանց հաստատունոյ իրիք, եւ հաստատուն՝ առանց երկրի՝ ոչ», էջ 94։ | «Չի առանց հողոյ ոչ լինի թանձրութիւն շօշափելի, եւ առանց ջրոյ կաղումն եւ թանձրումն, եւ ոչ առանց օդոյ՝ շարժումն, եւ առանց հրոյ՝ երեւումն»։ Ա, էջ 6ա11։ |

Ինչպես տեսնում ենք, բառացի համընկնումների մասին խոսել անհնար է. Եղիշեի մոտ տարրերի դասավորությունն այսպիսին է՝ հող, ջուր, օդ, հուր, մինչդեռ Պլատոնը նախ խոսում է հրո մասին, ջուրն ու օդը այստեղ առհասարակ բացակայում են, իսկ վերջում գրված է երկիրը (հողը)։ Այս տարբերությունները տեքստաբանական առումով խոսում են Եղիշեի «Տիմեոսի» հայերեն թարգմանության օգտագործման դեմ։ Թեև ինքը՝ Լ. Խաչիկյանը նկատում է, որ «Եղիշեի կապը Պլատոնի երկերի հայկական թարգմանություններից մեկի համար այս վկայությունը, անշուշտ, անբավարար է»[12], այնուամենայնիվ, նա եզրակացնում է. «Պլատոնի երկերը (գոնե անվիճելիորեն Տիմեոսի թարգմանությունը) հայերեն թարգմանված պետք է լինեն ոչ ուշ, քան 484 թվից»[13], որովհետև այն համարվում է Եղիշեի մահվան թվական։ Այսպիսով, ստացվում է, որ Պլատոնի երկերի թարգմանությունները կատարվել են Հունաբան դպրոցի գործունեության առաջին, հնագույն շրջանում և խմբակից են Դիոնիսիոս Թրակացու, Աֆթոնիոսի և Փիլոն Եբրայեցու երկերի թարգմանություններին։

Մի բանում Լ. Խաչիկյանն իրավացի է. Պլատոնի երկերի հայերեն թարգմանությունը իրոք կատարված է Հունաբան ոճով, թեև նա չի անդրադարձել բառապաշարի ու ոճի քննությանը։ Իրոք, այդ թարգմանությունները իրենց լեզվա-ոճական առանձնահատկություններով և ամբողջականությամբ չեն կարող վերագրվել Գր. Մագիստրոսին և պետք է իրենց տեղը գրավեն Հունա-

10 Լ. Խաչիկյան, Եղիշեի «Արարածոց մեկնութեան» աշխատությունը (թեկնածուական դիսերտացիա), Երևան, 1945, էջ 147 (անտիպ)։

11 Անդ, էջ 125 (ընդգծումները մերն են.—Ս. Ա.)։

12 Անդ, էջ 126։

13 Անդ, էջ 148։

բան դպրոցի արտադրանքների շարքում։ Բայց այդ դպրոցն ունեցել է երկար կյանք և զարգացման մի քանի շրջաններ։ Արդ, ո՞ր խմբին կամ ո՞ր շրջանին են պատկանում մեզ հետաքրքրող թարգմանությունները։

Պլատոնի երկերի հայերեն թարգմանության ժամանակը հնարավոր է դառնում ճշտությամբ որոշել նախ և առաջ նույն այդ թարգմանություններում առկա լեզվա-ոճական և տերմինաբանական տվյալներով։ Այդ տվյալներն անառարկելիորեն վկայում են, որ Պլատոնի երկերի հայերեն թարգմանությունները չպետք է կապել նաև Եղիշեի գործունեության հետ, որովհետև նրանք չեն պատկանում Հունաբան դպրոցի գործունեության ոչ 1-ին, ոչ էլ նույնիսկ 2-րդ շրջանին, այսինքն երևան են գալիս 484 թվականից տասնամյակներ հետո։

Այստեղ նախ և առաջ անհրաժեշտ է նշել Պլատոնի թարգմանություններում հանդիպող այն տերմինները, որոնք լայն շրջանառության մեջ մտան 3-րդ շրջանում։ Դրանք են մակացութիւն, մակացելի. տարբեր, տարբերութիւն, ներհակ, ներհակութիւն եզրերը, որոնք ստեղծվեցին միայն 2-րդ շրջանում (Արիստոտելի և Պորփյուրի երկերի թարգմանության ընթացքում), բայց մեծ տարածում գտան 3-րդ շրջանում (Դավիթ Անհաղթ և այլք)[14]։ Ակադ. Հ. Մանանդյանը միանգամայն համոզիչ կերպով ցույց է տալիս, որ այդ երեք տերմինները (մակացութիւն, ներհակ, տարբերութիւն) Հունաբան թարգմանությունների 2-րդ և 3-րդ շերտերի ամենաբնորոշ ցուցանիշներն են[15]։

Եվ ահա Պլատոնի երկերի բառապաշարի մեր քննությունը ցույց տվեց, որ այդ տերմիններն ամենալայն կիրառությունն են գտել այստեղ, երբեմն մեկ էջում հանդիպելով մի քանի անգամ․

1. Ներհակ (ἐναντίος), ներհակութիւն (ἐναντιότης), նաև ներհակական, ներհակապէս, ներհակաբար, ներհակագոյն—*Եւթ. 12, 17, 20, 26, 28, 32։ Տիմէոս 102, 103, 114, 119, 125, 137, 143 են։ Սոկրատայ պաշտպան. 49, 52, 60, 71։ Յաղագս օրինաց 33, 41, 47, 48, 54, 58, 68, 91, 97, 110, 125, 126, 138, 153, 154, 164, 175, 271 են։*

2. Տարբեր (διάφορος), տարբերութիւն (διαφορά), տարբերել (διαφέρω)—*Եւթ. 20, 21, 22։ Տիմ. 84, 85, 136։ Յաղագս օրինաց 32, 90, 126, 156, 168, 216, 318 են։ Մինոս 463։*

3. Մակացու (ἐπιστήμων), մակացութիւն (ἐπιστήμη), մակացելի (ἐπιστητός), նաև մակացող, մակացողութիւն—*Եւթ. 30, 33։ Սոկր. պաշտ. 40, 41։ Տիմէոս 100, 114, 143։ Յաղ. օր. 95, 188, 259, են։ Մինոս 464, 468, 469, 470։*

Այստեղ կիրառություն է գտել նաև 2-րդ շրջանում ստեղծված հակակայիլ (ἀντικεῖσθαι), հակակայութիւն (ἀντίστασις) տերմինը՝ *Սոկր. պաշտ. 59, 71։ Տիմէոս 118, 136։ Յաղ. օր. 34, 217, 321։*

Այս տերմինների առկայությունը խոսում է այն մասին, որ Պլատոնի երկերը չէին կարող թարգմանված լինել 1-ին շրջանում, նրանք այդ ժամանակ դեռ չկային հայերենի բառապաշարում։ Սակայն այդ թարգմանությունները չեն

[14] Հունաբան թարգմանությունների 3-րդ խմբի լեզվա-ոճական առանձնահատկությունների մասին տե՛ս Հ. Մանանդյան, Հունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները, Վիեննա, 1928, էջ 144—146, 151—155, 194—195։

[15] Նույն, էջ 114, 115, 133—134, 195։

ժանում նաև 2-րդ շրջանի արտադրանքների թվի մեջ, որովհետև նշված բնորոշ տերմինների հետ մեկտեղ Պլատոնի թարգմանություններում երևան են գալիս նաև այնպիսի նոր տերմիններ, որոնք ստեղծվեցին միայն 3-րդ շրջանում, մի հանգամանք, որը մերձեցնում է Պլատոնի երկերի թարգմանությունները Դավիթ Անհաղթի խմբին և նույն ժամանակ անջատում Արիստոտելի, Պորփյուրի և Անանունի («Յամբլիքոսի») թարգմանություններից, այսինքն 2-րդ խմբից: Ինչպես ցույց է տվել Հ. Մանանդյանը[16], 3-րդ խմբի համար այդպիսի բնորոշ տերմիններից են՝ **շարամերձիլ**, **շարամերձութիւն**, **ընդհանուր**, **ընդհանրական**, **եռոտնիմ** են:

Եթե 1-ին խմբի թարգմանություններում συνάπτω հունարեն բայը թարգմանվում էր **բաղխառ**, իսկ 2-րդ խմբի՝ **շարամատչիմ**, ապա 3-րդ խմբում այն անխտրաբար թարգմանվում է **շարամերձիմ**: Այդ առանձնահատկությունը, պարզվում է, իր արտահայտությունն է գտել նաև Պլատոնի երկերում.

**Շարամերձիմ** (συνάπτω), **շարամերձութիւն** (συνάφεια), **շարամերձական** (συναπτικός)—*Տիմ. 97, 99, 101, 158: Յաղ. օր. 69, 187, 204, 257, 290 են:*

*Սակայն են 3-րդ խմբի համար բնորոշ նաև հետևյալ եզրերը.*

**Ընդհանուր** (καθολικός), նաև **ընդհանրական**, **ընդհանրապէս**—*Մինովս 467: Տիմէոս 105:*

**Եռոտնիմ** (τρίπους), **եռոտանի**—*Յաղ. օր. 137:*

*Հանդես են գալիս և լայնորեն կիրառվում 3-րդ շրջանին հատուկ և այնպիսի նոր տերմիններ՝*

**Վերաշնչութիւն** (ἀναπνοή) —*Տիմ. 156, 157, 158, 163, 165 են:*

**Բացաբնակութիւն** (ἀποικία) —*Յաղ. օր. 114, 158, 178, 180:*

**Գովասանութիւն** (ἔπαινος) —*Մինովս 473, 474: Յաղ. օր. 48, 54, 138, 146, 272, 273, 274:*

**Հաւանականութիւն** (πειθώ) նաև **հաւանականագոյն**—*Յաղ. օր. 139, 321, 349: Տիմ. 121: Մին. 472:*

*Քննությունը ցույց տվեց նաև, որ միայն Պլատոնի և Դավթի երկերում է հանդիպում* **էմեռանելն** *(զէմեռանելն) խիստ արհեստական բայաձևը (տե՛ս «Սոկր. պաշտպ.» էջ 71. Դավթի «Սահմ. իմաստասիրութեան»*[17], *էջ 66): Այս արհեստական հավելյալ բառը համապատասխանում է հունարեն* τεθνάναι (Infin. perf.)[18] *բայաձևին: Կարելի է ենթադրել, որ հայերենի համար այդ՝ ոչ մի ուրիշ տեղ չհանդիպող արհեստական* **էմեռանել** *ձևը Դավթի աշխատության թարգմանչի կողմից գործածվել է Պլատոնի երկի թարգմանության օրինակով, այն կիրառվել է Դավթի երկի այնպիսի մի հատվածում, որը վերաբերում է հենց Պլատոնի հայացքների շարադրմանը:*

*Այն, որ Պլատոնի երկերի թարգմանությունները, պատկանելով 3-րդ խմբին, նախորդում են Դավթի աշխատություններին, երևում է նաև մի այլ բնորոշ փաստից: Պլատոնի թարգմանություններում հանդիպում է սեռական հոլովի հունարան արխայիկ -ո վերջավորությամբ ունեցող ձևը, որը ստեղծվել և կիրառվել է 2-րդ խմբի թարգմանություններում, մասնավորապես Պորփյուրի*

---

16 *Տե՛ս* Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 151, 160—161:*

17 Դավիթ Անհաղթ, *Սահմանք իմաստասիրութեան. հրատ.՝ Ս. Արևշատյան, Երևան, 1960:*

18 *Տե՛ս A. Busse,* Davidis Prolegomena, Berolini, 1904, *էջ 29, և* Հ. Մանանդյան, *նշվ. աշխ., էջ 146:*

«Անհրաժեշտութեանս մէջ»[19]: Այդ նույն ձևը կիրառված է Պլատոնի երկերում. օրինակ՝ Եւթյր—Մինոս 473.

Սակայն այս փաստը հիմնավորել չի տալիս Պլատոնի երկերը խմբակից համարելու 2-րդ շրջանին, այլ միայն վկայում է, որ Պլատոնի թարգմանությունները իրենց ոճի և տերմինաբանության վճռական հատկանիշներով խմբակից լինելով 3-րդ շրջանի երկերին, այդ խմբում հանդես են գալիս որպես ամենավաղ թարգմանությունների մի առանձին շերտ և այդ իսկ պատճառով ավելի մոտ են 2-րդ խմբի թարգմանություններին, քան Դավթի երկերը: Դավթի աշխատություններում այդ ձևը հանդիպում է միայն Պորփյուրի «Ներածությունից» քաղված մեջբերումների մեջ և ինքնուրույն տրդեն չի գործածվում: Իսկ հետագայում հունաբան թարգմանություններում այն լիովին դուրս է մղվում շրջանառությունից, որպես հայերենի համար չափազանց արհեստական մի խորթություն:

Ուշագրավ է նաև մի այլ կարևոր փաստ, որը վկայում է Դավթի երկերի թարգմանչի ծանոթությունը Պլատոնի աշխատությունների թարգմանությանը: Այսպես, օրինակ, Դավթի «Սահմանք իմաստասիրութեան» երկում հանդիպում ենք երկու հատվածի, որոնք գրեթե բառացի համընկնում են «Տիմեոսի» թարգմանության համապատասխան տեղերին:

| Տիմէոս | Սահմանք իմաստասիրութեան |
| --- | --- |
| Մանկանացու եւ այլ երիս սեռք անեղ են, և ապա ոչ եղելոց՝ երկինքն անկատար լինէր (էջ 107): | Այլ եւ երեք մեզ մանկանացուք անեղանելիք, որոց ոչ եղելոց՝ երկինքն անկատար: (էջ 4): |
| Ուստի և մեք բարեբախտեցաք գտեալ իմաստասիրութեան, որոյ մեծագոյն բարի ոչ եկն երբէք և ոչ եկեսցէ մանկանացու ազգիս պարգեւեալ յաստուածոցն: (էջ 115): | Լաւագոյն ամենայն արհեստից և մակացութեանց է իմաստասիրութիւն, որպէս և Պղատոն... յայտ առնէ ասելով, եթէ այսպիսի ինչ... ոչ եկն երբէք առ ի մարդիկ և ոչ եկեսցէ երբէք պարգեւեալ առ ի յաստուծոյ (էջ 110) |

Ինչպես տեսնում ենք, բացի բերված տերմինաբանական փաստարկումներից, Պլատոնի և Դավթի երկերում մատնանշված համընկնումները խոսում են հօգուտ այն բանի, որ Դավթի թարգմանիչը ծանոթ է եղել Պլատոնի հայերեն բնագրին և համապատասխան հատվածները թարգմանելիս գրեթե բառացի զետեղել է Դավթի շարադրանքի անհրաժեշտ տեղերում:

Այսպիսով, պարզվում է, որ Պլատոնի երկերը թարգմանվել են հունաբան դպրոցի գործունեության 3-րդ շրջանում, մոտավորապես VI դարի կեսերին կամ մի քիչ ավելի վաղ: Նրանք խմբակից են Դավիթ Անհաղթի երկերի հայերեն տարբերակների լեզվին, ոճին և տերմինաբանությանը, բայց կատարված են նրանցից առաջ: Պլատոնի երկերը թարգմանված են 2-րդ խմբի, այսինքն Արիստոտելի և Պորփյուրի աշխատություններից հետո:

Մեր եզրակացությունը բխում է ոչ միայն այստեղ բերված դրական փաստերից: Բացի շարադրվածից մենք հարկադրված եղանք զննելու մի շարք հնագույն հուշարձաններ՝ սկսած «Գիրք Թղթոցից» մինչև Անանիա Շիրակացի: Կարող ենք նշել, որ ո՛չ «Գիրք Թղթոցի» V—VI դարի գրություններում, ո՛չ էլ Եղիշեի, Մ. Խորենացու և Ղ. Փարպեցու գործերում Պլատոնի հայերեն թարգմա-

19 Անդ, էջ 187:

նության հետքեր չկան։ Առաջին նշանները ցույց է տալիս Դավիթ Անհաղթի գիտական ժառանգությունը, որի երկերն, ամենայն հավանականությամբ, թարգմանվել են VI դարի երկրորդ հիսնամյակում, ավելի ճշգրիտ՝ 50—70-ական թվականներին։

Իր երկարատև գործունեության ընթացքում՝ 460-ական թվականներից մինչև VIII դարի երրորդ տասնամյակը, հունաբան դպրոցը հայ ընթերցողին թարգմանաբար տվեց այնպիսի կարևոր երկերի մի ամբողջ շարան, որ հին աշխարհում գիտությունների ընդունված դասակարգմանը համապատասխան ստեղծվեց ժամանակակից մակարդակի վրա գտնվող հայերեն հարուստ և բազմաբովանդակ գիտական գրականություն։ Հունաբան դպրոցը և՛ իր թարգմանական գործերով, և՛ ինքնուրույն երկերով մեծապես նպաստեց աշխարհիկ գիտական մտքի վերելքին և հզոր արագացուցչի դեր խաղաց հայ փիլիսոփայական գիտության կազմավորման գործում։ Արիստոտելի, Փիլոն Ալեքսանդրացու, Պորփյուրի, արիստոտելյան երկերի Անանուն մեկնիչի, Դավիթ Անհաղթի աշխատությունների հետ մեկտեղ հայ փիլիսոփայական մտքի աշխարհականացման ու գիտական մակարդակի բարձրացման գործում ոչ պակաս կարևոր դեր խաղացին նաև Պլատոնի տրամախոսությունները։

Այժմ, երբ հրապարակի վրա են նոր սկզբնաղբյուրներ և հետազոտություններ, հնարավոր է բացի Պլատոնի երկերի համապատասխան զետեղումից ճշտել և լրացնել Հ. Մանանդյանի կողմից խմբավորված հունաբան թարգմանությունների երեք շրջանների ցանկը[20] (460-ական թթ. մինչև 8-րդ դ. վերջը).

## I խումբ

1. Դիոնիսիոս Թրակացու «Արվեստ քերականության».
2. «Գիրք պիտոյից» (Աֆթոնիոսի և Նիկողայոս Մյուռացու, լրացումներն ու վարժությունները Մովսես Խորենացու).
3. Փիլոն Եբրայեցու երկերը (14 գիրք).
4. Իրենեոս Լուգդունացու՝ ա) «Ցույց առաքելական քարոզության». բ) «Ընդդէմ հերձուածոց» երկի 4-րդ և 5-րդ գրքերը.
5. Կեղծ-Կալիսթենեսի «Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ»։

## II խումբ

1. Տիմոթեոս Ալեքսանդրացու (կամ Կուզի) «Հակաճառութիւն առ սահմանեալսն ի ժողովսյն Քաղկեդոնի».
2. Թեոն Ալեքսանդրացու «Յաղագս ճարտասանական կրթութեանց» (հունարեն բնագրի հետ միասին հրատարակեց պրոֆ. Հակոբ Մանանդյանը, Երևան, 1938).
3. Հերմես Եռամեծի «Առ Ասկղեպիոս Սահմանք» (հրատ.՝ Հ. Մանանդյանի, ռուսերեն թարգմանությունը՝ Ս. Արևշատյանի, տե՛ս «Բանբեր Մատենադարանի», հ. 3, Երևան, 1956)։
4. Պորփյուր Փյունիկեցու «Ներածութիւն Ստորոգութեանցն Արիստոտէլի».

---

20 Ցանկում ժամանակագրական լրիվ տեղեկություններ են տրված վերջին 40 տարիների ընթացքում հայտնաբերված ու հրապարակված հունաբան թարգմանությունների մասին։

5. Արիստոտել Ստագիրացու՝ ա) «Ստորոգութիւնք», բ) «Յաղագս մեկնութեան» («Պերիարմենիաս»).

6. Անանունի («Համբլիքոսի»)՝ ա) Մեկնութիւն Ստորոգութեանցն Արիստոտէլի» (լրիվ բնագրի հրատ.՝ Ս. Լալաֆարյանի և Վ. Չալոյանի, զուգահեռ ռուս. թարգմանությամբ՝ Ս. Արևշատյանի, Երևան, 1961), բ) «Մեկնութիւն Յաղագս մեկնութեան գրոցն Արիստոտէլի» (այս երկու բնագրերի Վենետիկի 1833 թ. հրատարակությունը կատարված է պակասավոր ձեռագրից)։

## III խումբ

1. Պլատոնի՝ ա) «Տիմէոս», բ) «Եւթիփրոն», գ) «Սոկրատայ պատասխանի» (կամ «Պաշտպանութիւն Սոկրատայ»), դ) «Օրէնք» (կամ «Օրէնսդրութիւնք»), ե) «Մինովս»։

2. Դավիթ Անհաղթի՝ ա) «Սահմանք իմաստասիրութեան» (քննական բնագիրը և զուգահեռ ռուս. թարգմանությունը՝ Ս. Արևշատյանի, Երևան 1960), բ) «Վերլուծութիւն Ներածութեանն Պորփիւրի», գ) «Մեկնութիւն ի վերլուծականն Արիստոտէլի» (քննական բնագիրը և ռուս. թարգմանությունը՝ Ս. Արևշատյանի, Երևան, 1967), դ) «Մեկնութիւն Ստորոգութեանցն Արիստոտէլի» (մինչև վերջերս վերագրվում էր Էլիասին).

3. Անանունի «Մեկնութիւն Ստորոգութեանց» հատվածը.

4. Նոննոսի «Ծաղկաքաղք պատմութեանց առասպելեացն ալնոցիկ, զորս յիշատակեաց Գրիգոր Աստուածաբանն».

5. Կեղծ-Արիստոտելի՝ ա) «Յաղագս աշխարհի», բ) «Յաղագս առաքինութեան».

6. Զենոն իմաստասերին վերագրվող «Յաղագս բնութեան» (հրատ.՝ Լ. Խաչիկյան, տե՛ս «Գիտական նյութերի ժողովածու», № 2, Երևան, 1949. ռուսերեն թարգմ.՝ Ս. Արևշատյանի, տե՛ս «Բանբեր Մատենադարանի», հ. 3, Երևան, 1956).

7. Եվագրիոս Կոստանդնուպոլսեցու «Յաղագս զանազանութեան բնութեան և առանձնաւորութեան, (բնագիրը իտալերեն թարգմանության հետ միասին վերջերս հրատարակեց Հ. Պ. Անանյանը, տես „Armeniaca“. Mélanges d'études Arméniennes, Վենետիկ, 1969)։[21]

8. Անանունի «Ճարտասան, Յաղագս բնութեան» և «Սահմանք փիլիսոփայականք» (բնագիրը ռուս. թարգմանության հետ միասին հրատ.՝ Ս. Արևշատյան, տե՛ս «Բանբեր Մատենադարանի», հ. 5, Երևան, 1960)։

Վերոհիշյալ թարգմանություններով չի սպառվում հունաբան դպրոցի գործունեությունը։ Այն շարունակվել է նաև VII—VIII դարերում և եղել է բավա-

21 «Բանբեր Մատենադարանի» սույն հատորում պետք է լույս տեսներ մեր կողմից պատրաստված Եվագրիոսի երկի քննական բնագիրը (կազմված Մատենադարանի №№ 500, 4188 ձեռագրերի հիման վրա)։ Հատորն արդեն հանձնված էր տպագրության, երբ Վենետիկից ստացվեց «Armeniaca» ժողովածուն, ուր հրատարակված տեսանք Եվագրիոսի նույն երկը Հ. Պողոս Անանյանի աշխատասիրությամբ։ Շնորհակալ ենք հարգելի բանասերին, որը ճիշտ է լուսաբանել այդ ուշագրավ թարգմանական հուշարձանը։ Նրա ներածական հոդվածում, սակայն, անհրաժեշտ էր նշել հանգուցյալ Հ. Ներսես Ակինյանի անուրանալի վաստակը Եվագրիոսի երկի հայտնաբերման գործում, ինչպես և Ն. Ակինյանին պատկանող առաջին խոսքն այդ բնագրի մասին։

կանին արդյունավետ։ Իրենց լեզվա-ոճական և տերմինաբանական հատկանիշներով այդ վերջին՝ 4-րդ խումբը, որի ժամանակագրական սահմանները մոտավորապես կարելի է որոշել VII դարի կեսերից մինչև VIII դարի 10-ական թվականների վերջը, սերտորեն կապված է նախորդ հունաբան թարգմանությունների հետ։ Բնականաբար, որպես վերջին շրջանի թարգմանություններ, դրանք ունեն ավելի ճոխ բառապաշար և ազատ են խրթին հունաբանություններից։ Այդ վերջին խումբն ավարտվում է մի շարք կարևորագույն երկերի թարգմանությամբ, որ 712—718 թթ. կատարել է անվանի հայ քերական, հռետոր ու փիլիսոփա Ստեփանոս Սյունեցին (Նեմեսիոսի, Գրիգոր Նյուսացու, Կյուրեղ Ալեքսանդրացու և Դիոնիսիոս Արեոպագացու երկերի թարգմանությունները)։ Ցավոք սրտի, բանասերների և փիլիսոփայության պատմության զբաղվողների կողմից հունաբան դպրոցի գործունեության այս եզրափակիչ փուլը անտեսված է։

Ստորև բերում ենք այդ վերջին՝ 4-րդ խմբի առավել աչքի ընկնող թարգմանությունների ցանկը.

1. Գևորգ Պիսիդեսի «Վեցօրեայք».

2. Անաստաս Սինայեցու «Յաղագս անձանց և նշանաց» (մինչև վերջերս վերագրվում էր Ա. Շիրակացուն. այդ մասին տե՛ս Հ. Բարթիկյանի հոդվածը «Բանբեր Մատենադարանի», հ. 7. Երևան, 1964).

3. Սոկրատ Սքոլաստիկոսի «Եկեղեցական պատմութիւն».

4. Նեմեսիոս Եմեսացու «Յաղագս բնութեան մարդոյ».

5. Կյուրեղ Ալեքսանդրացու «Պարապմանց գիրք».

6. Գրիգոր Նյուսացու «Յաղագս մարդոյ կազմութեան».

7. Կեղծ-Դիոնիսիոս Արեոպագացու՝ ա) «Յաղագս երկնայնոյն քահանայապետութեան», բ) «Յաղագս եկեղեցականին քահանայապետութեան», գ) «Յաղագս աստուածայնոցն անուանց», դ) «Յաղագս խորհրդականին աստուածաբանութեանն», ե) Դիոնիսիոս Արեոպագացուն վերագրվող «Թղթակցություն» և տարբեր նամակներ։

Շուրջ 250 տարիների ընթացքում գործած հունաբան դպրոցը հարստացրեց հայոց գրական ու գիտական ասպարեզը հին աշխարհի և վաղ քրիստոնեության շրջանի ավելի քան 60 արժեքավոր հուշարձաններով, որոնք էական նշանակություն ունեցան հայ գիտության, հատկապես փիլիսոփայության կազմավորման ու զարգացման համար։ Ի թիվս այդ փիլիսոփայական հուշարձանների, ինչպես պարզվում է այժմ, աշխարհիկ իմաստասիրական մտքի ձևավորման ընթացքում նշանակալից դեր խաղացին նաև Պլատոնի երկերը, որոնց թարգմանությունը հունաբան դպրոցի VI դարի կարևորագույն նվաճումներից մեկն է։


С. С. АРЕВШАТЯН

## О ВРЕМЕНИ ПЕРЕВОДА ДИАЛОГОВ ПЛАТОНА НА АРМЯНСКИЙ ЯЗЫК

В статье предпринята попытка решить вопрос о времени перевода диалогов Платона («Тимей», «Евтифрон», «Апология Сократа», «Зако-

вы» и «Минос») на армянский язык, вопрос, не получавший удовлетворительного ответа, несмотря на усилия ряда исследователей.

Автор отвергает распространенное среди филологов мнение, согласно которому эти переводы приписываются видному средневековому ученому Григору Магистросу (990—1058 гг.). Отвергается также необоснованное предположение о том, что они принадлежат к числу древнейших грекофильских переводов V века.

Впервые проводимое сличение армянских текстов Платона с памятниками грекофильской школы V—VI вв. и анализ их философской терминологии показывают, что дошедшие до нас древнеармянские переводы диалогов Платона по всем своим основным и решающим признакам принадлежат к 3-й группе грекофильских переводов. Они выполнены до середины VI века—после перевода сочинений Аристотеля, Порфирия и Анонима (2-я группа, конец V в.) и до трудов Давида Непобедимого (3-я группа, вторая половина VI в.). В 3-й группе грекофильских переводов они являются наиболее ранними, и поэтому имеют ряд черт, которые сближают древнеармянские версии диалогов Платона с переводными памятниками 2-й группы.

В заключение автор приводит дополненный и уточненный перечень продукции переводчиков-грекофилов (с третьей четверти V в. до конца VI в.), отмечая также наличие 4-ой группы переводов (с середины VII в. до 20-х годов VIII в.), оставшейся, как и диалоги Платона, вне поля зрения исследователей, занимавшихся историей грекофильской школы.

S. S. AREVCHATIAN

## A PROPOS DE L'EPOQUE DE LA TRADUCTION EN ARMENIEN DES DIALOGUES DE PLATON

Cet article est une tentative de répondre à la question relative à l'époque de la traduction en langue arménienne des dialogues de Platon (Timée, Euthiphron, l'Apologie de Socrate, les Lois, Minos), question qui n'a reçu aucune réponse satisfaisante malgré les efforts de nombreux savants.

L'auteur refute l'opinion, admise parmi les philologues, qui attribue ces traductions à Grégoire Magistre (990—1058), savant éminent du Moyen Age. Il refute également la supposition dénuée de fondement selon laquelle ces traductions sont du nombre des plus anciennes traductions grécophiles du V siècle.

Une collation, la première par ailleurs, des textes arméniens de Platon avec les monuments de l'école grécophile des V-VI siècles et l'analyse de la terminologie philosophique montrent que les anciennes traductions arméniennes des dialogues de Platon, d'après tous les indices essentiels et décisifs, se rapportent au 3-ème groupe des traductions

grécophiles. Elles ont été faites durant la première moitié du VI siècle-après la traduction des oeuvres d'Aristote, de Porphyre et d'Anonyme (2-ème groupe, fin du V siècle) et avant l'apparition des ouvrages de David l'Invincible (3-ème groupe, seconde moitié du VI siècle). Parmi les traductions grécophiles du 3-ème groupe elles sont les premières, c'est pourquoi elles ont un certain nombre de particularités, qui rapprochent les anciennes versions arméniennes des dialogues de Platon des traductions du 2-ème groupe.

En dernier lieu l'auteur donne la liste revue et complétée des traductions grécophiles (du troisième quart du V siècle à la fin du VI siècle) notant également l'existence d'un 4-ème groupe de traductions (de la moitié du VII siècle aux années 20 du VIII siècle) qui, ainsi que les dialogues de Platon est resté en dehors du champ de vision des savants s'occupant de l'histoire de l'école grécophile.